# ՀՐԱՀԱՆԳ

## ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆ

## ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԱՑ

ՎԱՒԵՐԱՑԵԱԼ

Ի ԿՐՕՆԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ

ԽԱՌՆ ԺՈՂՈՎՈՑ

ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ





ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ

Ի ՏՊԱՐԱՆԻ Յ. ՄԻՒՀԵՆՏԻՍԵԱՆ

1873

Hrahang barekargutean

# ՀՐԱՀԱՆԳ

## ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆ

## ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԱՑ



ՎԱՒԵՐԱՑԵԱԼ

*Ի ԿՐՕՆԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ*

*ԽԱՌՆ ԺՈՂՈՎՈՑ*

ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ



ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ

Ի ՏՊԱՐԱՆԻ Յ. ՄԻՒՀԷՆՏԻՍԵԱՆ

1873

# ԱԶԴ

Ազգային վարժարանաց բարեկարգութեան համար Ուսումնական խորհրդոյ պատրաստած սոյն Հրահանգը նկատողութեան առնլով Խառն Ժողովը, քանի մը փոփոխութեամբ ընդունեց և վաւերացուց, և որոշեց տպագրութեամբ հրատարակել և հրաւիրել թէ Մայրաքաղաքիս և թէ Գաւառաց Թաղական խորհուրդները և վարժարանաց Հոգաբարձութիւնները և Խնամակալութիւնները, որ սոյն Հրահանգին համեմատ իրենց խնամոց ներքեւ գտնուած ազգային վարժարանաց բարեկարգութեանը հոգ տանին. և փորձառութեամբ ստացած դիտողութիւննին բարեհաճին տեղեկագրել առ Ուսումնական խորհուրդն Կեդրոնական Վարչութեան. որպէս զի 'ի պահանջել հարկին սոյն Հրահանգը վերաքննուի և վերստին հրատարակուի:

Բայց մինչև այն ատեն սոյն Հրահանգն ամբողջ պիտի գործադրուի, և թէ Մայրաքաղաքիս և թէ Գաւառաց Թաղական խորհուրդք և վարժարանաց Հոգաբարձութիւնք և Խնամակալութիւնք պարտաւոր են ըստ այսմ վարուելու:

17 Յուլիս 1873
'ի Պատրիարքարանի Հայոց
'ի Կ. Պոլիս

ՆԱԽԱԳԱՀ
ԱԶԳԱՅԻՆ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ
ՊԱՏՐԻԱՐՔ Կ. ՊՈԼՍՈՅ
ՄԿՐՏԻՉ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ԽՐԻՄԵԱՆ

Դիւան կրօնական ժողովոյ

ԱՏԵՆԱԴՊԻՐ
Մ. Վ. ԻԶՄԻՐԼԵԱՆ

ԱՏԵՆԱՊԵՏ
ԹԱԴԷՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ

Դիւան քաղաքական ժողովոյ

ԱՏԵՆԱԴՊԻՐ
Ս. Պ. Պ. ՓԱՓԱԶԵԱՆՑ

ԱՏԵՆԱՊԵՏ
ՍԵՆԵՔԵՐԻՄ Մ. ՄԱՆՈՒԿԵԱՆ

# ՀՐԱՀԱՆԳ

## ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆ

## ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԱՑ



### Ա.

### ՎԱՐԺԱՐԱՆ

1. Ազգային վարժարանները երկու տեսակ են

ա. ՆԱԽԱԿՐԹԱՐԱՆ կամ ՆԱԽՆԱԿԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ.

բ. ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆ կամ ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ։

Նախակրթարանի մասն է ԸՆՏԵԼԱՐԱՆԸ, որ Ծաղկոց ալ կ'ըսուի։

2. Այս վարժարանները թէ առանձինն և թէ մի և նոյն յարկի տակ կրնան ըլլալ։

3. Երբ մի և նոյն յարկի տակ ըլլան, ըստ կարելւոյն հոգ տանելու է որ Ուսումնարանը բաժանեալ ըլլայ Նախակրթարանէն. իսկ Ընտելարանը միշտ բաժանեալ պիտի ըլլայ առանձին սրահով կամ սենեակով։

4. Վարժարանաց շէնքը և այլ ամեն կարգադրութիւնները պէտք է որ ըլլան ողջպահիկ կանոնաց համեմատ։ Ուստի նոր շինուելիք վարժարանի յատակագիծը պէտք է ներկայացնել Ուսումնական խորհրդոյ, և անոր հաւանութիւնն առնել. իսկ արդէն շինուածներն ալ պէտք է ըստ կարելւոյն յարմարցնել ողջպահիկ կանոնաց։

5. Ամէն թաղ կամ գիւղ իր վարժարանաց մէջ Ընտելարանի և Նախակրթարանի ուսմունքը պարտաւորիչ պի-

ուրընէ թէ մանկանց և թէ աղջկանց. և եթէ ձեռնհաս է՝ Ուսումնարանի սահմանեալ ուսմունքն ամբողջ և կանոնաւոր կերպով պիտի աւանդէ ։

Իսկ եթէ անձեռնհաս է, և այնպէս ըլլալը հաստատուած է Ազգային Վարչութենէն, ան ատեն ուրիշ մերձակայ Թաղերու կամ գիւղերու հետ միանալով պէտք է որ կեդրոնական Ուսումնարան մը հիմնելու հոգ տանի ։

Իսկ եթէ այս ալ ընել անկարելի կամ դժուարին ըլլայ, պարտական է գէթ Ուսումնարանի առաջին երեք տարիներու ուսմունքն աւանդել ։

Եւ եթէ այս մասին որ և է փոփոխութեան կամ տնօրէնութեան հարկ տեսնէ, պէտք է որ դիմէ Ուսումնական Խորհրդոյ հաւանութեանը ։

---

## Բ.

## ՈՒՍՄՈՒՆՔ

6. Ընթերցարանի մէջ կ'աւանդուին
Ընթերցանութիւն.
Գիր.
Թուանշան ճանաչել ու գրել.
Քրիստոնէական հրահանգ և տէրունական աղօթք բանիւ ։

7. Նախակրթարանի մէջ կ'աւանդուին
Քրիստոնէական վարդապետութիւն ըստ դաւանութեան Հայաստանեայց ուղղափառ Ս. Եկեղեցւոյ, և Սրբազան պատմութիւն Հին և Նոր Կտակարանաց.
Բարոյական՝ ազգային և ընտանեկան կրթութիւն.
Ազգային գրաբառ լեզու, կամ Հայկաբանութիւն, ցթարգմանութիւն Ս. Աւետարանի.
Ազգային պատմութիւն՝ հանդերձ Հայաստանի աշխարհագրութեամբ.

Տարերք Թուագիտութեան .
Տարերք Աշխարհագրութեան .
Եկեղեցական երգեցողութիւն .
Գծագրութիւն :

(Տես Հրահանգ Թաղ. Խորհրդոց յօդ. 33—34—35)

8 . Նախակրթարանի մէջ պէտք է որ աւանդուին նաև Հողագործական գիտելիք , Պարզ Տոմարակալութիւն , Մարմնամարզութիւն և Ազգային Երգք .

9 . Ուսումնարանի մէջ կ'աւանդուին

Քրիստոնէական վարդապետութիւն և Կրօնագիտութիւն, հանդերձ պատմութեամբ Հայաստանեայց ուղղափառ Ս . Եկեղեցւոյ .
Բարոյական՝ ազգային և ընտանեկան կրթութիւն և Առողջաբանութիւն .
Ազգային գրաբառ լեզու , կամ Հայկաբանութիւն .
Պատմութիւն .
Սկզբունք Քանակագիտութեան .
Աշխարհագրութիւն .
Լեզուագիտութիւնք . (Տաճկերէն, Գաղղիերէն ևն.)
Սկզբունք Բնական պատմութեան .
» Բնագիտութեան
» Տարրագիտութեան
» Տնտեսագիտութեան .
» Մեքենաբանութեան .
» Փիլիսոփայութեան .
Տոմարակալութիւն .
Ձևագրութիւն .
Եկեղեցական երգեցողութիւն՝ հանդերձ ձայնագրութեամբ .
Ազգային երգք՝ հանդերձ ձայնագրութեամբ .
Գեղագրութիւն .
Ասղնեգործութիւն :

## Գ.

## ԲԱՇԽՈՒՄՆ ՈՒՍՄԱՆՑ

10. Ընթերցարանի ուսմունքը սկիզբէն շարունակաբար կ'աւանդուին փոփոխակի կարգով մը, մերթ ընթերցման, մերթ գրի, մերթ աղօթքի եւ ուսմանց պարապեցնելով տղայքը, որոնք թէ մանուկ եւ թէ աղջիկ միևնոյն սրահի մէջ կրնան պարապիլ. 5–7 տարեկան հասակի մէջ։

11. Նախակրթարանի ուսմունքը 3 տարեկան շրջաններու վրայ հետեւեալ կերպով կը բաշխուին.

### Ա. ՏԱՐԻ (Ա. ԿԱՐԳ)

Պատմութիւն Ս. Գրոց համառօտ։
Հայկաբանութիւն (Քերականութեան համառօտ Ա. մաս։ Ուսումն ընտանեկան բառից)։
Ազգային պատմութիւն (Ցուցք Արշակունեաց)։
Թուաբանութիւն (Չորս գործողութիւնք)։
Աշխարհագրութիւն (Հայաստան և Ասիա)։

### Բ. ՏԱՐԻ (Բ. ԿԱՐԳ)

Պատմութիւն Ս. Գրոց համառօտ (Շարունակութիւն Ա. տարւոյ)։
Հայկաբանութիւն (Քերականութեան Բ. մաս՝ և բառագիտական վերլուծութիւն Ս. Աւետարանի վրայ։ Շար. ուսման ընտանեկան բառից)։
Ազգային պատմութիւն (Ցուցք պատմութեան)։
Թուաբանութիւն (Կոտորակք և Համեմատութիւն)։
Աշխարհագրութիւն (Եւրոպա և Ափրիկէ)։

### Գ. ՏԱՐԻ (Գ. ԿԱՐԳ)

Քրիստոնէական վարդապետութիւն համառօտ։

Հայկաբանութիւն (Քերականական կրթութիւն. Թարգմանութիւն և վերլուծութիւն Ս. Աւետարանի։ Պարզ նամակագրութիւն աշխարհաբար լեզուաւ)։
Ազգային պատմութիւն (Ընդհանուր և Հնախօսական գիտելիք)։
Թուաբանութիւն (Աւերական գործողութիւնք և պարզ Տասնորդականներ)։
Աշխարհագրութիւն (Ափրիկէ, Ովկիանիա, և Բնական և Աստղական աշխարհագրութիւն)։

Առաջին տարիէն շարունակաբար կ'աւանդուին նաև
Բարոյական՝ ազգային և ընտանեկան կրթութիւն, և Հողագործական գիտելիք (ամէն օր որոշեալ ժամանակ մը՝ փոփոխակի և ընդհանուր դասախօսութեամբ).
Գիր.
Գծագրութիւն (Կրթութիւն պարզ գծերու օրինակներէն թուղթի և սև տախտակի վրայ. և սկզբունք Երկրաչափական գծագրութեան).
Եկեղեցական երգեցողութիւն յարմարաւոր մանկանց.
Ազգային երգք.
Ձեռնագործութիւն (կար) աղջկանց.
Մարմնամարզութիւն՝ ողջապահիկ օրինաց համեմատ, շարժմանց կանոնաւորելու և ջիղերը զօրացնելու կրթութեամբ։

12. Ազգային լեզու և Թուաբանութեան համար ամէն օր, իսկ միւս ուսմանց համար որ ընդմէջ դասախօսութիւն կ'ըլլայ, և կամ ամէն օր։

Դասերուն տևողութիւնը սովորաբար մէկ ժամ է, կամ քիչ մ'աւելի կամ նուազ, ինչպէս որ պատշաճ դատուի։

13. Ուսումնարանի ուսմունքը 6 տարեկան շրջաններու վրայ հետևեալ կերպով կը բաշխուին.

Ա. ՏԱՐԻ (Ա. ԿԱՐԳ)

Հայկաբանութիւն (Քերականական գիտելիք ընդարձակ. Թարգմ.

և վերջ. ընտիր մատենագրաց. Նախնագրութեան կամ Վիպագրութեան)։

Պատմութիւն (Ազգային ընտրելոյ՝ հատուածներ Հնախօսութեանց)։

Պատմութիւն (Հին ազգաց՝ հատուածներ աշխարհագրութեանց)։

Սկզբունք Քանակագիտութեան (Թուագիտութեան ընտրելոյ)։

Աշխարհագրութիւն (Քաղաքական ընտրելոյ)։

Լեզուագիտութիւնք

Տաճկերէն (ընթերցք և գիր հատուածներ ուղղագրութեանց)։

Գաղղիերէն (ընթերցք. և գիր հատուածներ ուղղագրութեանց և խոնարհմանց բայից)։

Սկզբունք Բնական պատմութեան (Կենդանաբանութեան)։

## Բ. ՏԱՐԻ (Բ. ԿԱՐԳ)

Հայկաբանութիւն (Թարգմ. յաշխարհաբառէ 'ի գրաբառ և վերծանութիւն ընտիր մատենագրաց. Աստուածաշունչ Ս. Գիրք. Եզնիկ, Եղիշէ, Ոսկեբերան, Եւայլն)։

Պատմութիւն (Միջին դարու՝ հատուածներ աշխարհագրութեանց)։

Սկզբունք Քանակագիտութեան (Երկրաչափութիւն և Հանրահաշիւ)։

Աշխարհագրութիւն (Շար. Ա. տարւոյ)։

Լեզուագիտութիւնք

Տաճկերէն (Շար. Ա. տարւոյ. Քաղուածք Օսմ. և Թարգմանութիւն)։

Գաղղիերէն (Ուղղագրութիւն և Քերականութիւն Ա. մաս հատուածներ կրթութեանց, և Թարգմանութիւն)։

Սկզբունք Բնական պատմութեան (Բուսաբանութիւն)։

» Բնագիտութեան։

» Տարրագիտութեան։

## Գ. ՏԱՐԻ (Գ. ԿԱՐԳ)

Հայկաբանութիւն (Շար. վերծանութեան ընտիր մատենագրաց և Շարադրութիւն)։

Պատմութիւն (Նոր ազգաց)։

Սկզբունք Քանակագիտութեան (Շար. Հանրահաշուի և Երկրաչափութեան. Եռանկիւնաչափութիւն ուղղագիծ և Սֆերաչափութիւն)։

Աշխարհագրութիւն (Տիեզերագրութիւն)։

Լեզուագիտութիւնք

Տաճկերէն (Շար. Բ. տարւոյ և Նամակագրութիւն)։

Գաղղիերէն (Ուղղագր. Քերականութիւն Բ. մաս՝ հանդերձ կրկնութեամբ. Թարգմանութիւն և Նամակագրութիւն)։

Սկզբունք Բնական պատմութեան (Երկրաբանութիւն)։

" Բնագիտութեան (Շար. Բ. տարւոյ)։

" Տարրագիտութեան ( " " )։

Տնտեսագիտութիւն (Համառօտ և նախնական գիտելիք)։

Տոմարակալութիւն։

Դ. ՏԱՐԻ (Դ. ԿԱՐԳ)

Հայկաբանութիւն (Շար. Գ. տարւոյ և Գրագիտութիւն)։

Պատմութիւն (Քաղաքակրթութեան)։

Սկզբունք Քանակագիտութեան (Եռանկիւնաչափութիւն գնդային և Երկրաչափութիւն վերլուծական)։

Լեզուագիտութիւնք

Տաճկերէն (Համառօտ Քերականութիւն Պարսկերէնի և Արաբերէնի. վերլուծութիւն ընտիր մատենագրաց, Տիւանոր, Օսմ. պատմութիւն Ճէվտէթ փաշայի եւայլն. Գրագիտութիւն և Շարադրութիւն)։

Գաղղիերէն (վերլ. ընտիր մատենագրաց. Րասին, Քոռնէյլ. և այլն, Գրագիտութիւն և Շարադրութիւն)։

Սկզբնաւորութիւն Անգլիերէնի, կամ ուրիշ լեզուի։

Փիլիսոփայութիւն (Տրամաբանութիւն, Հոգեբանութիւն)։

Սկզբունք Տնտեսագիտութեան։

Ե. ՏԱՐԻ (Ե. ԿԱՐԳ)

Հայկաբանութիւն (Շար. Դ. տարւոյ)։

Պատմութիւն (Փիլիսոփայութեան պատմութեան).
Սկզբունք Բանականագիտութեան (Անհատական հոգին).
Լեզուագիտութիւնք
Տաճկերէն (Շար. Դ. տարւոյ).
Գաղղ. ( » » ) նոյն.
Փիլիսոփայութիւն (Բարոյական և Պատմ. փիլիսոփայութեան).
Սկզբունք Տնտեսագիտութեան (Շար. Դ. տարւոյ).
» Մեքենագիտութեան.

## Զ. ՏԱՐԻ (Զ. ԿԱՐԳ)

Շարունակութիւն ամսանց նախընթաց տարւոյ և Պատրաստութիւն ուսուցչական քննութեան.

Առաջին տարիէն շարունակաբար կ'աւանդուին նաև

Քրիստոնէական վարդապետութիւն և Կրօնագիտութիւն հանդերձ պատմութեամբ Հայաստանեայց ուղղափառ Ս. Եկեղեցւոյ.
Բարոյական՝ ազգային և ընտանեկան կրթութիւն և Առողջաբանութիւն (ամեն օր որոշեալ ժամանակի մէջ՝ փոփոխակի և ընդհանուր դասախօսութեամբ).
Ձևագրութիւն (Երկրաչափական և ընդօրինակական գծագրութիւն, որոնց մէջ՝ մանաւանդ մեքենականութեան և ճարտարապետութեան վերաբերեալ ծրագիրը. իսկ նկարչութիւն՝ յարմարաւորաց).
Եկեղեցական երգեցողութիւն հանդերձ ձայնագրութեամբ յարմարաւոր մանկանց.

Ազգային երգք հանդերձ ձայնագրութեամբ.
Ձեռնագործութիւն (կար և ձև) աղջկանց.
Գեղագրութիւն.

14. Դասատուութիւնք սովորաբար օր ընդ մէջ կ'ըլլան, կամ շաբաթը երկիցս և կամ միանգամ՝ ըստ յարմարութեան և կարևորութեան.

Դասերուն տեւողութիւնը սովորաբար մէկ ժամ է, կամ աւելի, ըստ կարեւորութեան։

---

## Դ.

## ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ ԵՒ ՏԵՍՉՈՒԹԻՒՆ

15. Իւրաքանչիւր Թաղական խորհուրդ իր Թաղային վարժարանաց համար առանձին Հոգաբարձութիւն կը կազմէ, իր մէջէն կամ դրսէն և կամ խառն ընտրելով 3էն մինչև 5 ուսումնական և ուսումնասէր անձինք. Աղջկանց վարժարանի խնամակալութիւնն ալ՝ եթէ կարելի է՝ ձեռընհաս տիկիններու կը յանձնէ, որոյ պաշտօնը յար և նման է Հոգաբարձութեան պաշտօնին, ապա թէ ոչ՝ Հոգաբարձութեան տեսչութեան ներքև կը թողու։

Թաղական խորհուրդն ընտրեալ Հոգաբարձութիւնն և խնամակալութիւնը կը ծանուցանէ տեղւոյն Ուսումնական խորհրդոյ, որպէս զի անոր հետ դպրոցական խնդրոց վրայ յարաբերութիւն ունենան. (տես յօդ. 19րդ. Թաղ. Խորհրդոց Հրահանգի)։

Եթէ որոշեալ թուէն աւելի կամ նուազ թուով ընտրութիւն ընել հարկ ըլլայ, նոյնպէս եթէ խնամակալութիւն չկրնան ընտրել, պատճառներովը պէտք է ծանուցանեն տեղւոյն Ուսումնական խորհրդոյ և անոր հաւանութիւնն ստանան։

16. Հոգաբարձութիւնը կ'ընտրէ Տեսուչ մը, որոյ պաշտօնն է Ուսումնական խորհրդոյ Հրահանգաց համեմատ՝ վարժապետաց և աշակերտաց ընթացքին և անոնց պաշտօնին և պարտաւորութեան անթերի կատարմանը վրայ հսկել, և պէտք եղած հրահանգները տալ. վարժարանին բարեկարգութեանը և յառաջդիմութեան հոգ տանիլ, և բարոյական՝ ազգային և ընտանեկան կրթութեան փոյթ ունենալ։

Տեսուչը պէտք է վկայեալ ըլլայ Ուսումնական խորհըրդէն, և անոր ընտրութիւնը պիտի ծանուցուի Ուսումնական խորհրդոյ ։

17․ Տեսուչը Հոգաբարձութեան անդամներէն ալ կըրնայ ըլլալ․ իսկ եթէ դուրսէն անձ մ'է, դարձեալ իրաւունք ունի Հոգաբարձութեան խորհրդոց ներկայ գտնուելու, բայց այն ատեն ձայն ունի և ոչ քուէ ։

18․ Տեսուչը պատասխանատու է Հոգաբարձութեան ։

19․ Տեսչին պարտքն է սահմանել արձանագրութեան, դասախօսութեան և այլ պէտք եղած օրագրութեան տումարները, և դասախօսութեան և այլ գործոց ժամանակացոյցը, ըստ հրահանգի Ուսումնական խորհրդոյ ։

20․ Տեսուչը ամէն ամսու գլուխ վարժարանին բոլոր պաշտօնէից ամսական ընկալագիրն ներքև ՚ի վճարումն կը կնքէ նոյն վարժարանին Տեսչութեան կնքովը, և Հոգաբարձութիւնը պարտական է անմիջապէս վճարել ։

21․ Հոգաբարձութիւնը կ'որոշէ վարժարանին ամէն կարգի պաշտօնեայները, վարժապետք և այլն․ և պարտական է ուրաքանչիւրին հետ իրենց պաշտօնին վերաբերեալ փոխադարձ պայմանագիրն ստորագրել ։

22․ Տեսուչը պարտական է ազդարարութիւն ընել վարժարանին ամէն կարգի պաշտօնէից, երբ պարտազանց գտնուին․ և երկու անգամ ազդարարութիւն ընելէ վերջը կը ծանուցանէ Հոգաբարձութեան ։

23․ Հոգաբարձութիւնը գրով կը ծանուցանէ նոյն չ'անսացող պաշտօնէին․ որ եթէ միևնոյն ընթացքը շարունակէ, պիտի դադարի իր պաշտօնէն ։

Ապացուցեալ ծանր յանցանք մը ազդարարութեանց հարկ չի թողուր ։

Հոգաբարձութիւնը պարտական է Ուսումնական խորհրդոյ տեղեկագիր տալ արձակեալ պաշտօնէից նկատմամբ ։

24․ Այցելու հիւր մը Տեսչին կամ անոր արտօնմամբ ուրիշ պաշտօնէի մը ընկերութեամբ կրնայ այցելութիւն

ընել վարժարանին, առանց խանգարման և չփոթութեան տեղի տալու:

Իսկ աղջկանց վարժարանի այցելութեան համար պէտք է Հոգաբարձութեան կամ Խնամակալութեան կողմէն՝ եթէ ունի՝ արտօնութիւն ստանալ կանխաւ.

25. Եկեղեցական հայրք, Թաղական խորհրդոյ անդամք և ուրիշ ազգային պաշտօնատարներ կրնան այցելութիւն ընել ազգային վարժարանաց. և եթէ դիտողութիւն ունին՝ բանիւ կամ գրով կ'ուղղեն առ Տեսուչն կամ առ Հոգաբարձութիւնն:

26. Կրօնական ժողովոյ և Ուսումնական խորհրդոյ անդամք միշտ իրաւունք ունին այցելութիւն ընելու ազգային վարժարանաց, և եթէ դիտողութեան արժանի կէտ նշմարեն, բացատրութիւն պահանջելու Տեսչէն կամ Հոգաբարձութենէն և կամ Խնամակալութենէն:

27. Կրօնական ժողով, Ուսումնական խորհուրդ, Թաղական խորհուրդ և նոյն իսկ Հոգաբարձութիւն եթէ պէտք ունենան վարժարանին աշակերտաց որ և է կարգի ուսումնական վիճակը քննել և հասկընալ, կամ անձամբ և կամ իրենց կողմանէ գրով ներկայացեալ քննչաց միջոցաւ, Տեսուչը պարտական է նոյն կարգին քննութիւնք կատարել տալ իր կամ դասատուին ներկայութեամբ:

28. Հոգաբարձութիւնը արտօնագիր կուտայ նորեկ աշակերտի մը:

29. Նորեկ աշակերտը իւր ձեռքը պիտի ունենայ իւր ծննդեան և մկրտութեան վկայագիրը. և եթէ ուրիշ վարժարանէ կուգայ, նոյն վարժարանին Հոգաբարձութեան կամ Տեսչին ծանուցագիրը:

Հոգաբարձութիւն կամ Տեսուչ պարտական է հրաժարող աշակերտի մը ծանուցագիր տալ անոր ուսմանց և այլ վիճակին վրայ:

30. Հոգաբարձութիւնը պիտի ջանայ որ յաջողակ աշակերտներու համար քիչ պատահի այս տարաժամ հրաժարումը, աղքատները խնամելով ըստ կարելւոյն:

31. Հոգաբարձութիւնը ըստ պատշաճի պէտք է՛ որ ուսմանց ընթացքը լրացնող կամ լրացնելու վրայ եղող յարմարաւոր աշակերտներէն դասակրկնիչ կամ դասատուի օգնական դնէ արժան տեսած կարգերուն համար։

32. Ծնողք իրենց բողոքը կամ գանգատը կանոնաւոր կերպով կ'ուղղեն Տեսչին. և եթէ Տեսչին համար է՝ Հոգաբարձութեան, և եթէ Հոգաբարձութեան համար է՝ կամ Թաղական խորհրդոյ և կամ Ուսումնական խորհրդոյ։

33. Աշակերտ մը եթէ խնդիր մ'ունենայ, խնդրագրով կը դիմէ Տեսչին։

Ի ներկայութեան աշակերտաց որ և է հրահանգ չի տրուիր վարժապետի, կամ այլ պաշտօնէի մը։

34. Տեսչին պարտքն է աշակերտաց ուսմանց և վարուց վիճակը միշտ քննել և պատուոյ արժանիները պատուել, և պատժոյ արժանիները պատժել։

Պատիւներն են

Ա. Օրագրութեանց մէջ բարի նիշ դնել,
Բ. Ի ներկայութեան աշակերտաց գովեստ կարդալ,
Գ. Ի ներկայութեան Հոգաբարձութեան կամ Թաղական խորհրդոյ և կամ այլ ազգային այցելուաց գովեստ կարդալ,
Դ. Գովեստից վկայական տալ առ ծնողս ուղղեալ,
Ե. Ուսումնական խորհրդոյ ծանուցանել,
Զ. Ուսումնական խորհրդէն պատուագիր առնել։

Պատիժներն են

Ա. Օրագրութեանց մէջ յոռի նիշ դնել,
Բ. Առանձին խրատ լսել Դաստիարակէն.
Գ. " " " Տեսչէն.
Դ. Հրապարակաւ " " "

Ե · Հոգաբարձութեան ներկայութեանը խրատւել, և իմաց տալ ծնողաց,

Զ · Արտաքսել վարժարանէն կամ առժամանակեայ և կամ մշտնջենապէս:

Թէ Տեսուչք և թէ Վարժապետք պարտական են այս սկզբանց համեմատ վարուիլ, և ողջախոհիկ կանոնաց հակառակ պատժական միջոցներու երբէք չդիմել, և զգուշանալ տղայքն ահաբեկ ընելու ամէն ձևերէն:

35 · Ազգային վարժարանները պէտք է որ բացուին կիւրակէ օրերը և կամ ձմրան գիշերները Թաղին կամ գիւղին չափահաս և ուսումնատենչ անձանց համար, և ուսմունք ըստ կարգի պիտի աւանդուին անոնց միճակին և պիտոյից համաձայն:

Հոգաբարձութիւնք պարտական են այս մասին ամէն հոգ տանելու, մանաւանդ գաւառաց գիւղօրէից մէջ, և այս նպատակին համար կազմուած ընկերութիւնները քաջալերելու:

36 · Հոգաբարձութեանց և Խնամակալութեանց պաշտօնին վերաբերեալ ուրիշ մասերը կը պարունակին Թաղական խորհրդոց Հրահանգին մէջ (տես յօդ. 37–56 րդ.):

## Ե.

## ՎԱՐԺԱՊԵՏՔ

37· Մայրաքաղաքիս մէջ Դասատուութիւն, Դաստիարակութիւն (կառավարչութիւն) և Մանկավարժութիւն ընող Վարժապետները պէտք է որ վկայագիր ունենան 'ի ձեռին, տուեալ Կեդրոնական Վարչութեան Ուսումնական խորհրդէն, և վաւերացեալ Ս. Պատրիարքէն՝ հաւանութեամբ Կրօնական և Քաղաքական Ժողովոց:

38 · Իւրաքանչիւր առաջնորդական վիճակի մէջ գըտնուած վարժապետք պէտք է որ վկայագիր ունենան գա-

ւառին Ուսումնական խորհրդէն և վաւերացեալ Ս. Առաջնորդէն՝ հաւանութեամբ կրօնական և քաղաքական ժողովոց գաւառին ։

39. Կ. Պօլսէն 'ի գաւառ, կամ մէկ գաւառէ 'ի միւս գաւառ գնացող վարժապետները պարտական են իրենց ձեռքը վկայագիր ունենալ ։

40. Առանց վկայագրի վարժապետ մ'անընդունելի է. և եթէ հոգաբարձութիւն մը զանի ընդունի, պատասխանատու պիտի մնայ ։

41. Իւրաքանչիւր վարժապետ իւր պաշտօնին հետ հոգ պիտի ունենայ նաև աշակերտաց բարոյական՝ ազգային և ընտանեկան կրթութեանը և բարի զգացմանց բարգաւաճմանը. հետևաբար ինքը՝ վարժապետն ալ բարի վարուք՝ ազգասիրութեամբ և ողջմտութեամբ ծանուցեալ, և գործով բարի օրինակ պիտի ըլլայ աշակերտացը ։

42. Օտար լեզուաց և արտաքին ուսմանց դասատուները 'ի հարկին կրնան օտարազգի կամ այլադաւան ըլլալ. բայց վկայեալ պիտի ըլլան իրենց դաս տուած ուսմանց և բարի վարուց մասին. և աշակերտաց կրօնական՝ բարոյական և ազգային զգացմանց վնասակար գիտում կամ հանգամանք պիտի չունենան ։

43. Վարժապետ մը իր որոշեալ ժամուն պարտի անխափան ներկայ գտնուիլ վարժարանին մէջ ։

Ստիպողական բանաւոր պատճառաւ մը եթէ բացակայ մնայ, պարտական է ծանուցանել Տեսչին ։

Այսպիսի բացակայութիւն մը Տեսչին հաւանութեամբը կրնայ արդարանալ ։

44. Վարժապետ մը իր պաշտօնավարութեան մէջ ուրիշ զբաղմունք պիտի չ'ունենայ ։

45. Դասատուին պարտքն է աւանդելի դասը կանխաւ պատրաստել, և դիւրաւոյց եղանակաւ աւանդել, աշակերտաց հասակին և կարողութեանը համեմատ. և անմիջապէս ստուգել աշակերտաց հասկցած և ուսած ըլլալը ։

46. Ուսմանց դասագրքերը Կեդրոնական Վարչութեան Ուսումնական խորհրդոյ գիտութեամբն ու հաւանութեամբը պիտի գործածուին, որոնց ցանկը հրատարակուած պիտի ըլլայ։

47. Դասատուն պիտի նշանակէ իր օրագրութեան մէջ աւանդած դասը և պիտի ստորագրէ. նոյնպէս պիտի նշանակէ հարցուած աշակերտին կարողութեան աստիճանը յատուկ նիշերով։

48. Օրագրութեանց մէջ թէ դասատուաց և թէ դաստիարակաց գործածելիք նիշերը պիտի ըլլան հետևեալ թուանշանները, որոնց կարողութիւնն ալ դիմացը նշանակուած է.

| | |
|---|---|
| 0 | անպիտան |
| 1, 2, 3 | տկարագոյն |
| 4, 5, 6 | տկար |
| 7, 8, 9 | միջակ |
| 10, 11, 12 | լաւ |
| 13, 14, 15 | լաւագոյն |
| 16, 17, 18 | քաջալաւ |

19 }
20 } յոյժ քաջալեր (պահելի նիշեր)

Բ. — Բացակայ եղող աշակերտաց համար
Հ. — Հիւանդ " " "

49. Դաստիարակը անդուլ պիտի հսկէ աշակերտաց վարուց և աշխատասիրութեան և մաքրութեան վրայ, և ըստ ժամանակացուցին պիտի վարուի։

50. Ամէն առաւօտ աշակերտները Ս. Եկեղեցւոյ մէջ պէտք է որ հաւաքուին (եթէ վարժարանը Ս. Եկեղեցւոյ մօտ է). և յետոյ դաստիարակին առաջնորդութեամբ վարժարան կ'երթան, ուր սովորական աղօթքնին կ'ընեն. ինչպէս նաև կիսաւուր ճաշէն յառաջ և յետոյ՝ և երեկոյեան արձակման համար սահմանեալ աղօթքները պիտի ընեն որոշեալ ժամանակին։

Այս աղօթքները իրենց եղանակներովը կանխաւ սահմանուած պիտի ըլլան Կրօնական ժողովէն։

51. Դաստիարակը պիտի ունենայ Օրագրութեան տետր մը, որուն մէջ պիտի նշանակէ աշակերտաց բացակայութիւնը և անոնց վարուց նիշերը։

Պիտի ունենայ ուրիշ տետր մ'ալ, յորում պիտի արձանագրէ

Նորեկ և հրաժարեալ աշակերտները.

Պատույ և պատժոյ արժանի աշակերտները, որոնք Տեսչին կամ Հոգաբարձութեան պիտի ներկայանան։

Դասատուաց բացակայութիւնը կամ ներկայութիւնն ըստ որոշեալ ժամուն.

Պաշտօնական կամ անպաշտօն անձանց այցելութիւնները.

Վարժարանին մէջ տեղի ունեցած նշանակութեան արժանի դէպքերը, Տեսչին խորհրդով։

52. Դաստիարակը պիտի ունենայ նաև տետր մը, յորում պիտի արձանագրուին աշակերտք, վարժարան մտած

օրերնուն կարգաւը, հօր անուամբ և արհեստով, մականուամբ, ծննդեան Թուականաւ և ուսման վիճակաւ։

Այն արձանագրութեան տումարին մէջ կ'արձանագրուի նաև աշակերտին հրաժարումն իր Թուականաւը և ուսման վիճակաւը։

53. Տարւոյն հինգ տաղաւարներուն մանաւանդ Ս. Զատկի, Ծննդեան և Վերափոխման տաղաւարներուն, դաստիարակը որոշեալ աւուր մէջ աշակերտները Ս. եկեղեցի կ'իջեցնէ 'ի խոստովանութիւն. և Խոստովանահօր որոշած օրը աշակերտք կը մասնակցին Ս. Հաղորդութեան։

54. Խոստովանութեան օրէն մինչև Ս. Հաղորդութեան մասնակցելու օրը, աշակերտք պարտական են հոգևոր պատրաստութեանց ալ պարապիլ։

55. Մանկավարժ կ'ըսուին ոչ միայն Ընտելարանի յատուկ դասատուք և դաստիարակք, այլ և Նախակրթարանի բոլոր դասատուք և դաստիարակք. հետևաբար ասոնցմէ հմտութիւն կը պահանջուի ոչ միայն իրենց աւանդած դասերուն չափ, այլ նոյն դասերուն բարձրագոյն աստիճանին չափ ալ. և դաստիարակութեան օգտոյն տեղեակ, և աշակերտաց հետ վարուելու և ուսմունքը անոնց քաղցրացնելու և բարի կրթութիւն մը տալու ձեռնհաս ըլլալու են։

56. Ազգային վարժարանաց Հոգաբարձութեանց և Խնամակալութեանց առաջին և գլխաւոր պարտքն է Ընտելարաններն ու Նախակրթարանները այս կարգի բազմահմուտ մանկավարժից խնամոց յանձնել, և այս մասին 'ի սրտէ հոգ ունենալ ամէն ուրիշ պիտոյքներէ աւելի։

57. Եթէ Թաղի կամ գիւղի մը մէջ Ընտելարաններ բացուած կան ազգային վարժարանէն դուրս, Հոգաբարձութիւնք կամ առաւել Խնամակալութիւնք պարտական են հսկել անոնց վրայ, որ յաջողակ և վկայեալ մանկավարժներու, մանաւանդ մանկավարժուհիներու խնամոց ներքև ըլլան։

58. Ընտրելարանաց մէջ ձանձրացուցիչ եղանակներէ զգուշանալու համար հարկ է որ ժամերը մերթ ուսման և մերթ զբօսանաց համար բաշխուին։

59. Տնտեսները, տնտեսուհիները և այլ պաշտօնեաները պէտք է որ բարի զգացմանց և վարուց տէր և ծնողական գութ ունեցող՝ ծանուցեալ կամ վկայեալ անձինք ըլլան։

## Զ.

## ՔՆՆՈՒԹԻՒՆ

60. Դասատուները չորս ամիսն անգամ մը (Փետրուարի, Յունիսի և Հոկտեմբերի սկիզբը) օրական քննութեանց մասին իւրաքանչիւր աշակերտի օրագրութեանց մէջ առած նիշերուն միջին թիւը կը գտնեն, որ աշակերտին կարողութեան աստիճանը կը ցուցնէ, և ցուցակով մը կը յանձնեն Տեսչին։

61. Դաստիարակներն ալ՝ նոյնպէս չորս ամիսն անգամ մը՝ իրենց օրագրութեան համեմատ՝ իւրաքանչիւր աշակերտի վարուց միջին թիւը կամ աստիճանը կ՚որոշեն և ցուցակով մը կը յանձնեն Տեսչին։

62. Դասատուները նաև չորս ամիսն անգամ մը քննութիւն կ՚ընեն նախընթաց ամսոց մէջ աւանդած դասերուն վրայ և առանձինն կը նշանակեն օրագրութեան մէջ։

63. Հոկտեմբերի քննութիւնները տարեկան կը համարուին, և այս քննութեանց ներկայ կրնան գտնուիլ Հոգաբարձութեան, Թաղական խորհրդոյ, Ուսումնական խորհրդոյ և Կրօնական ժողովոյ անդամք և քննութեան համար ուրիշ հրաւիրեալ անձինք։

64. Տեսուչը կը հաւաքէ օրագրութիւնները և քննութեանց ցուցակները, և կ՚արձանագրէ վիճակացոյց տոմարի մը մէջ և կը ներկայացնէ Հոգաբարձութեան։

65. Հոգաբարձութիւնը Վիճակացոյց տումարին համեմատ իւրաքանչիւր աշակերտի վիճակը կը նշանակէ Վիճակացոյց Թղթի մէջ, և վարժարանին կնքովը կը կնքէ և կը ղրկէ իւրաքանչիւր աշակերտի ծնողաց։

66. Վիճակացոյց տումարին համեմատ ցուցակ մ՚ալ շինուելով պիտի կախուի վարժարանին սրահին մէջ մինչև յաջորդ քննութիւն, և անոր մէկ օրինակն ալ Ուսումնական խորհրդոյ պիտի հաղորդուի։

67. Ուսումնական խորհուրդն ինք՝ կամ իր ընտրած անձանց միջոցաւ կը քննէ Ուսումնարանի ուսմանց ընթացքը լրացնող աշակերտները։

Այս քննութիւնները կարգով մը Հոկտեմբերի մէջ կ՚ըսկըսին ու կ՚աւարտին, և Ուսումնական խորհուրդը վկայագիր կու տայ ուսմանց ընթացքը լրացնող աշակերտաց։

68. Նոյեմբեր 1 դպրոցական նոր տարին կ՚սկսի, և այս միջոցին Հոգաբարձութիւնը կ՚ընէ բոլոր կարգերուն փոփոխութիւնը՝ Տեսչին խորհրդով։

Եթէ աշակերտ մը իր քննութիւնները գոհացուցիչ կերպով անցուցած չէ, դարձեալ իր նախկին կարգին մէջ կը մնայ։

69. Նախակրթարանի ընթացքը լրացնող աշակերտները յետ քննութեան կ՚անցնին Ուսումնարանը, և անոնց Վիճակացոյցը ընդհանուր տեղեկագրով մը Հոգաբարձութիւնը պիտի ներկայացնէ Ուսումնական խորհրդոյ։

70. Հոգաբարձութիւնը պէտք է որ Նախակրթութիւնն աւարտող աշակերտաց ծնողքներէն կանխաւ ապահովութիւն ստանայ, Ուսումնարանի գոնէ առաջին երեք տարիներուն շրջանն իրենց զաւակաց անխափան լրացնել տալու։

71. Ամէն ազգային վարժարան կրնայ տարեկան հանդէս կատարել ըստ սովորութեան, և Թաղական խորհուրդը նոյն հանդիսին կը հրաւիրէ Եկեղեցական հայրք, ուսանողաց ծնողքը և այլ ազգայինք։

Հոգաբարձութիւնը հանդիսականաց կը ներկայացնէ վարժարանին թէ բարոյական և թէ նիւթական վիճակը, և ուսանողաց Վիճակացոյց տեղեկագիրը։ Իսկ եթէ պատշաճ դատուի՝ մասնաւոր քննութիւն մ'ալ ընելէ յետոյ՝ ուսանողները բարոյապէս կամ նիւթապէս կը վարձատրուին։

Այս հանդէսները սովորաբար կը կատարուին յետ աւարտման տարեկան քննութեանց։

72. Այն վարժարանները որոնք սովորաբար արձակուրդ կ'ընեն, Յուլիսի 15 էն մինչև Յուլիսի վերջը կրնան ընել, կամ բոլորովին և կամ մասամբ։



